## Գնաց եւ վերադարձաւ

Զօր. Այզընհաուըր Քորէա գնաց եւ վերադարձաւ անսովոր գաղտնապահութեամբ: Ճիշդ է որ գրոյցներ կը շրջէին, բայց ոչ ոք ստոյգ բան մը գիտէր:

Անցեալ ուրբաթ օրէն ի վեր մարդ չէր տեսած զինքը եւ թերթերը այլեւս չէին տպեր իր նկարը: Մինչեւ անգամ կիրակի օր, երբ եկեղեցի կ'երթայ իր կնոջը հետ, ոչ մէկ նկար տպուեցաւ: Ոստիկանները կը շարունակէին հսկել իր երկու տուներուն վրայ:

Գաղտնիքը պաշտօնապէս յայտնուեցաւ ուրբաթ օր: Զօրավարը Քորէա մեկնած էր Գշ. օր: Ուրբաթ զեկուցում տուաւ 125 թղթակիցներու առջեւ, Սէուլի մէջ: Երեք անգամ տեսնուած է հարաւ. Քորէայի նախագահին հետ: Օդանաւով թռիչքները տեւած են 47 ժամ: Հարիւր հազարաւոր Քորէացիներ եւ զինուորներ իրեն կը սպասէին ցուրտէն դողալով, բայց յուսախաբ եղան: Այզընհաուըր ներողութիւն խնդրեց նամակ մը տպելով թերթերուն մէջ:

Իր զեկուցման առեն, խոստովանեցաւ թէ «համայնաբոյժ դեղեր, հնարքներ չունիմ, որեւէ խնդիր լուծելու համար: Շատ մը միջոցներ կան սահմանափակելու համար այս կարգի պատերազմները, բայց մէկ բան ստոյգ է,— անընդհատելի է պատուութիւնը»:

Ոչ վճռական, ոչ ալ անմիջական փոփոխութիւններ կը նախատեսուին այս պտոյտին հետեւանքով: Իր կարծիքով դաշնակից ուժերը կրնան պահել իրենց ներկայ դիրքերը, առանց աւելորդ ծախքեր պատճառելու: Եթէ նոր արշաւանք մը փորձեն, վախ կայ որ կռիւը ծաւալի: Ուրեմն Այզընհաուըր իբրեւ նախագահ ալ պիտի գոհանայ սպասելով եւ յուսալով համբերութեամբ:

**ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ**

ԱԶԳ. ԺՈՂՈՎԻ ուրբաթ օրուան նիստին մէջ դահլիճը փրկուեցաւ միայն մէկ քուէով: Ընկերվարականները կ'առաջարկէին յետաձգել ելեւմտական օրինագիծը: Ժողովը մերժեց 305ի դէմ 306 ձայնով: Ելմտական յանձնաժողովը մերժեց Պ. Փինէի մէկ առաջարկը հարկային օրէնքի բարենորոգման մասին, որուն շնորհիւ կը յուսար 40 հազար միլիոն ֆրանք ճարել: Վարչապետը վստահութիւն պիտի պահանջէ Գշ. օր:

ՄԻՋԻՆ ԱՐԵՒԵԼՔԻ ամերիկեան շրջուն դեսպանը, Էտուին Լոք, ետ կանչուեցաւ: Դեսպանը ճառ մը խօսելով Պէյրութի մէջ, դիտել տուած էր թէ անհրաժեշտ է ոչ միայն մասնագէտներ, այլեւ մեծ դրամագլուխ տրամադրել յետամնաց երկիրներուն:

ԻՍՐԱՅԷԼ ուժգին բողոքագիր մը յանձնեց Զեխոսլովաքիոյ գործակատարին, բողոքելով Փրակայի դատին առթիւ եղած «զրպարտութեանց» դէմ:

ԴԱՄԱՍԿՈՍ գնաց գերման ծանօթ ելմտագէտը, Տոքթ. Շախտ, վերակազմելու համար Սուրիոյ ելեւմուտքը:

ԵԳԻՊՏՈՍԻ վարչապետը, զօր. Նեկիպ, ազատ արձակեց մնացեալ 35 երեւելիներն ալ, որոնք արգելափակուած էին երկու ամիսէ ի վեր:

ԲՈՒՌՆ ԿՌԻՒ ՄԸ տեղի ունեցաւ Իտալիոյ երեսփ. ժողովին մէջ: Խումբ մը երեսփոխաններ ծեծկուեցան: Աթոռներ, կաղամարներ, կօշիկներ եւ ուրիշ ամէն տեսակ իրեր իրար խառնուած էին: Բարապանի մը գանկը ջախջախուեցաւ: Քանի մը վիրաւորներ հիւանդանոց փոխադրուեցան: Հարիւր երեսփոխաններու աչքերը ուռած, հագուստները պատռած էին:

ՀՆԴԿԱՉԻՆԻ ԿՌԻՒՆԵՐԸ մեղմացած են, օդին խստութեան հետեւանքով: Ֆրանս. աղբիւրէ 6000 կը հաշուեն ըմբոստներուն կորուստը:

ՀԱՄԱՅՆԱՎԱՐ Կեդր. Կոմիտէի ժողովը կը վերջանայ այսօր: Նիստը գաղտնի ըլլալով, զեկոյցներ կը տրուին մամուլին: Ժոռժ Քոնիօ ըսած է,— «Պէտք է խորտակել աշխարհակալութիւնը, որպէս զի ճամբայ բացուի Խ. Միութեան խաղաղասիրական ծրագրին առջեւ»: Տիւքլոյի կարծիքով, այս վերջին ժողովն է որ տեղի կ'ունենայ ի բացակայութեան Թորէզի:

ՍՈՒՐԻՈՅ սպարապետը, զնդ. Շիշաքլի, լրագրական զրոյցի մը առթիւ շեշտեց թէ «Արաբները մէկ ազգ կը կազմեն, միեւնոյն պատմութիւնը եւ լեզուն ունենալով: Բոլոր արաբ երկիրները կը կազմեն մէկ հայրենիք որ կը տարածուի Տաւրոսէն Պարսից ծոց, Եթովպիա, Սահարա, Ատլանտեան ովկիանոս եւ Միջերկրական»: Սուրիոյ միակ կուսակցութիւնը, «Ազատագրական Շարժում», նստակեաց պիտի դարձնէ վաչկատուն ցեղերը: «Արգիլուած է ամէն խտրութիւն՝ դաւանական, ազգային կամ ցեղապետական»:

ՀԱՅ ԶԻՆՈՒՈՐ ՄԸ, Մարսէլ Մուրատեան, զոհ գացած է Կալէսի (Թունուզ) պահականոցին դէմ կատարուած յարձակման: Ծանր վիրաւորներուն մէջ կը գտնուի ուրիշ հայ զինուոր մը, Այվազեան: Մարսէյլի «Արծիւ» Մարզ. Միութիւնը այս առթիւ ցաւակցութիւն կը յայտնէ ընկեր Արամ Մուրատեանի:

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

### ԱՆԻԷՌ ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. «Արամ» ենթակոմիտէի, այս կիրակի ժամը 16—23, ընկերվարականներու սրահը, 145bis, Av. Argenteuil, Անիէռ:

Կը նախագահէ ընկեր ՀՐԱՉ ԿՈԹՈՂԵԱՆ
Կը խօսի ընկեր ԽԱՉԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ

## Հայ բանաստեղծութեան օրը

### ՄԻԼԱՆՈՅԻ ՄԷՋ

Եշ., 11 Դեկտ., ժամը 21.15ին
ANGELICUM սրահին մէջ (Piazza S. Angelo)
JEAN BALLARD կը խօսի՝ »Les Voix de l'Arménie»
LUC ANDRÉ MARCEL «La poesie arménienne au moyen - âge»:

Դասախօսները կը ներկայացնէ Բժ. Արամայիս Սրապեան:

Ներկայ պիտի ըլլան նաեւ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ եւ Կ. ՓՈԼԱՏԵԱՆ:

## Ցերեկոյթ պարահանդէս

Ֆ. Կապ. Խաչի Պանեէօ Բաշանի մասնաճիւղին կողմէ, այս կիրակի ժամը 4—11, 72 Bld. Maréchal Joffre, Պուր լա Րէնի սրահին մէջ:

Գեղարուեստական բաժնին
Ճոխ եւ մատչելի պիւֆէ Մուտքը 150 Ֆր.

Հաղորդակցութեան միջոցներ.— Métro Bourg la Reine կամ Aut. 188 Porte d'Orléansէն, իջնել Place Condorcet:

### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ ՌՈՒԲԷՆԻ ՄԱՍԻՆ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Սիամանթօ» խումբը կազմակերպած է դասախօսութիւն մը՝ այս երկուշաբթի ժամը 20.30ին, Երիտ. Քրիստ. Միութեան սրահը՝ Cours Lafayette, 8 Passage Coste: Պիտի խօսի ընկեր Հրաչ Տասնապետեան — «Ռուբէն Տէր Մինասեան, մարդը եւ իր գործը»: Մուտքը ազատ է:

Տէր եւ Տիկ. Ն. Մ. Խաչիկեան (Ս. Սաթուռնէն), Տէր եւ Տիկ. Պ. Ա. Խաչիկեան (Վիէն), Տէր եւ Տիկին Գ. Ա. Պալեան (Գահիրէ), Պ. Գ. Խաչիկեան, Տէր եւ Տիկ. Կ. Մ. Խաչիկեան (Ամերիկա), Պ. Խաչիկեան, Տէր եւ Տիկին Մ. Լ. Խաչիկեան (Պոլիս), Տէր եւ Տիկին Ս. Դ. Պալեան (Գահիրէ), Տէր եւ Տիկին Վ. Ն. Պալեան (Գահիրէ) խորունկ վիշտով կը ծանուցանեն իրենց սիրեցեալ մօր, քրոջ եւ ազգականին Այրի տիկին ԼՈՒՍԱՆ ԽԱՉԻԿԵԱՆԻ (Ծնեալ Պալեան) մահը որ տեղի ունեցաւ Նոյ. 30ին Վիէնի հիւանդանոցին մէջ ծանր գործողութենէ մը վերջ: 75 տարեկան էր:

Յուղարկաւորութիւնը կատարուեցաւ Դեկտ. 2ին եւ մարմինը ամփոփուեցաւ տեղին գերեզմանատունը:






**Le Gérant : A. NERCESSIAN**
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)


## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Մանուկներու Օրուան յանձնախումբին ժողովը այս երկուշաբթի, ժամը 4ին Régent սրճարանի վերնայարկը, մեթրօ Cadet: Մասնաճիւղերէն կը խնդրուի ղրկել իրենց ներկայացուցիչները:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Հ. Բ. Ը. Միութեան տարեկան պարահանդէսը՝ Փետր. 22ին, կիրակի օր, ժամը 16էն մինչեւ կէս գիշեր Ժորժ Ե.ի մեծ հանդիսասրահին մէջ:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Մանուկներու օրը Լիոնի մէջ, 3 Յունուար, շաբաթ երեկոյ ժամը 8.30ին, Գ. Թաղապետարանի սրահը:

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ԿՈՒՍԱԿԻՑՆԵՐՈՒ համագումարը կը բացուի այսօր, ուրբաթ, Վիէննայի մէջ: Թերթերը կը գրեն թէ բազմաթիւ Ամերիկացիներ Վիէննա գացած են, Հիւս. Ափրիկէի խնդիրը յուզելու համար: Եգիպտոսի պատուիրակներէն մէկն է Մոսկուայի նախկին դեսպանը, Մոհամմէտ Քէմալ:

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ Նախագահը ետ առաւ իր դիմումը՝ Սահմանադրական Ատեանէն, որ պիտի վճռէր թէ օրինակա՞ն է վերջերս կնքուած դաշնագիրներուն վաւերացումը: Վարչապետը այժմ կը յուսայ ապահովել վաւերացումը:

ԱՏԼԱՆՏԵԱՆԻ ԴԱՇԻՆՔԻՆ զին. վարիչները գաղտնի նիստ մը գումարեցին Փարիզի մէջ, քննելու համար վերազինման վիճակը: Կ'ըսուի թէ ներկայ ընթացքով տասը զօրաբաժին պակաս պիտի ըլլայ 1953ի հաշիւը (70 զօրաբաժին): Օդանաւերն ալ ծրագրուած 7000էն պակաս պիտի գան:

ՅՈՒՆԱՍՏԱՆԻ վարչապետը, զօր. Փափագոս, անհրաժեշտ կը գտնէ գինակցութիւն մը իր երկրին, Թուրքիոյ եւ Եուկոսլաւիոյ միջեւ, Ալպանիան չէզոքացնելու, Պուլկարիան նեղը դնելու եւ ուրիշ ռազմական գործեր կատարելու համար:

ՅՈՒՐՏԸ ՍԱՍՏԿԱՑԱՒ Փարիզի եւ ամբողջ Ֆրանսայի մէջ: Մասնագէտներ կը կարծեն թէ պիտի մեղմանայ հետզհետէ:

ԵՐԱԽԱՆԵՐՈՒ յատուկ փոշիէն մինչեւ հիմա մեռած են 43 պզտիկներ: Գիտունները կը հաստատեն թէ թունաւոր նիւթեր կը պարունակէ:

ԼՈՐՏԵՐՈՒ ԺՈՂՈՎԸ օրինագիծ մը կը քննէ որուն համաձայն Թագուհին պիտի կրնայ ամէն տարի տասը տիտղոսներ շնորհել առանց ժառանգական իրաւունքի: Այն ատեն կին-լորտեր ալ պիտի բազմին ժողովին մէջ:

ՍՈՒՐԻՈՅ սպարապետը, Զնդ. Շիշաքլի, Գահիրէ կը սպասուի մօտերս: Պիտի մնայ հինգ օր:

---

ԱԼՖՈՐՎԻԼ.— Եչ. օրուան դպրոցին համար կրթ. մարմին մը կազմուած է նախաձեռնութեամբ եկեղեցւոյ հոգաբարձութեան, հետեւեալ անդամներով.— Պ. Պ. Մ. Եանըգեան՝ ատենապետ, Կ. Տոտողեան՝ ատենադպիր, Յ. Քիւփէլեան՝ գանձապահ, Տիկ. Գ. Ֆաքիրեան՝ խորհրդական, Տիկին Ա. Քէպէլեան խորհրդական:

Կը խնդրուի հասարակութենէն եւ մասնաւորապէս բոլոր կազմակերպութիւններէն օժնել այս ազգօգուտ ձեռնարկին իրենց նիւթական եւ բարոյական անվերապահ աջակցութեամբ:

---

«ՀԱՅՐԵՆԻՔ»ՆԵՐՈՒ ԵՒ ARMENIAN REVIEWԻ

Արտասահմանի բաժանորդներուն ուշադրութեան

Այն բաժանորդներն ու գործակալները, որոնք իրենց հին հաշիւները չեն փակած, բայց, կ'ուզեն նորոգել 1953 տարեշրջանի համար, պէտք է 1953 Յունուար 1էն առաջ հասկացողութեան գան վարչութեան հետ:

Ցանձնարարութիւն չստացուելու, կամ որոշ կարգադրութիւն մը չըլլալու պարագային, թերթերու առաքումը 1953 Յունուար 1էն սկսեալ պիտի դադրեցնենք անխտիր:

«ՀԱՅՐԵՆԻՔ»Ի ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

---



---



## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ...

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

## ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷՔ

Ֆրանսահայ Կապոյտ Խաչի Մարսէյլի տարեկան պարահանդէսին:

Դեկտեմբեր 20 շաբաթ երեկոյեան ժամը 9էն մինչեւ լոյս, Օթէլ Սփլանտիտի շքեղ սրահներուն մէջ:

Գեղարուեստական նոխ բաժին եւ ընտիր նըւագախումբ:

---

### ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ

Շաւիլի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ այս կիրակի հանդիսաւոր պատարագ պիտի մատուցուի Շաւիլի մատրան մէջ:

Երգեցողութիւնները Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ դպիրներու կողմէ, Եկմալեան եռաձայն եղանակով:

Յաւարտ պատարագի հոգեհանգստեան պաշտօն եկեղեցւոյս դպիր Պ. Զաւէն Յովհաննէսեանի ողբացեալ ծնողքի յիշատակին: Սկիզբն ժամերգութեան 9ին, Ս. պատարագ ժամը 10ին:

---

### ՆՈՒՊԱՐԵԱՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԸ ՎԵՐԱԲԱՑՈՒԱԾ

Հ. Բ. Ը. Միութեան Եւրոպայի Կեդր. Յանձնաժողովը պատիւ ունի յայտարարելու թէ Նուպարեան Մատենադարանը վերաբացուած է: Ընդունելութեան ժամեր.— Ամէն օր 10—12 եւ 14—18, բացի չորեքշաբթի, կիրակի եւ տօնական օրերէ:

---



---

### ՀԱՅԵՐԷՆԻ ՆՈՐ ԴԱՍԸՆԹԱՑՔ

Նախաձեռնութեամբ Հ. Բ. Ը. Մ. Փարիզի մասնաճիւղին, 32 rue de Tréviseի Հայ Ազգ. Տան մէջ: Դասեր հայերէնի, ազգ. պատմութեան եւ աշխարհագրութեան, հինգշաբթի օրերը, առաւօտ կէսօրէն վերջ ժամը 2ին: Արձանագրութեան համար դիմել Պ. Պ. Արամ Հանչէրի, 9 rue Saulnier եւ Գեղամ Աճէմեանի, 12 rue Cadet: Շուտով տեղի պիտի ունենան նաեւ գիշերային դասախօսութիւններ, երիտասարդներուն համար, հինգշաբթի օրերը:

---

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Ընկեր Պ. Զպուքճեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ այս կիրակի հոգեհանգիստ պիտի կատարուի ողբացեալ ՏԻԿԻՆ ԱՂԱՒՆԻ Պ. ԶՊՈՒՔՃԵԱՆԻ յիշատակին, իր մահուան քառասունքին առթիւ:

Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները:

---



## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

ՍՏԻՊՈՂԱԲԱՐ ԿԸ ԽՆԴՐՈՒԻ ՄԵՐ ԲՈԼՈՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐԷՆ ՓԱԿԵԼ ԴԵԿՏԵՄԲԵՐԻ ԸՆԹԱՑՔԻՆ ԻՐԵՆՑ ԱՌԿԱԽ ՀԱՇԻՒՆԵՐԸ:

× ԻՏԱԼԻՈՅ ՄԷՋ ԿՐՆԱՆ ՎՃԱՐԵԼ ՏՕՔԹ. Ե. ԱՐՋՈՒՄԱՆԵԱՆԻ (ՄԻԼԱՆՕ):

---

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Գուլվառ Օտտոյի Վըռամեան ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ այս շաբաթ ժամը 20.30ին, սովորական հաւաքատեղին: Պարտաւորիչ ներկայութիւն:

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս ուրբաթ իրիկուն ժամը 9ին, սովորական հաւաքատեղին:

Հ. Յ. Դ. ԱՐԵՒՄՏ. ԵՒՐՈՊԱՅԻ Ուսանողական ընդհ. Միութեան ժողովը՝ ուրբաթ ժամը 20.30ին, սովորական հաւաքատեղին:

ԻԹԱԼԻ.— Ֆ. Կ. Խաչի Իթալիի մասնաճիւղի ժողովը այս երկուշաբթի ժամը 3ին, սովորական հաւաքատեղին: Պարտաւորիչ ներկայութիւն:

ՎԱԼԱՆՍ.— Խարբերդի նորակազմ Հայր. Միութեան ընդհ. ժողովը՝ այս կիրակի առտու ժամը 9ին, հայրենակից Լեւոն Առաքելեանի բնակարանին մէջ: Կարեւոր օրակարգ:

ՏՐԱՊԻԶՈՆԻ Նահանգի (Պոնտոս) Հայր. Միութեան տարեկան ընդհ. ժողովը, 14 Դեկտ. Կիրակի կէսօրէն վերջ, ժամը 3ին, Café Regent, métro Cadet: Օրակարգ.— 1) Զեկոյց, 2) Հաշուետուութիւն, 3) Ընտրութիւն նոր վարչութեան:

Կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները անխտիր:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Տրապիզոնի Հայր. Միութեան պարահանդէսը, 17 Մայիս, կիրակի, Cercle Militaireի մէջ:

---

### «ՀԱՅ - ԲՈՅԺ»Ի ՀԱՄԱՐ

Ալֆորվիլէն Տէր եւ Տիկին Յ. Սիմոնեան 1500 Ֆր. եւ Տէր եւ Տիկին Վ. Ուրբաթեան 2000 Ֆր. կը նուիրեն «Հայ - Բոյժ»ին, Այրի Տիկին Նուրիցա Նշանեանի կսկծալի մահուան առթիւ:





---

Le Gérant : A. NERCESSIAN

Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

մին օգնեցին Անգլիա եւ Մ. Նահանգները: Բանաձեւը կը հրաւիրէ Ֆրանսան վերսկսիլ բանակցութիւնները Թունուզի ճշմարիտ ներկայացուցիչներուն հետ, անկախութիւն տալու համար: Յանձնախումբը մերժեց նաեւ այն կէտը որ կ՚առաջարկէր ՄԱԿի ընդհ. ժողովին օրակարգը անցընել Թունուզի խնդիրը, ինչպէս եւ այն կէտը որ կ՚ըսէր թէ ներկայ վիճակը վտանգ մըն է խաղաղութեան համար:

Յետոյ 3ի դէմ 45 ձայնով ընդունուեցաւ լատին Ամերիկայի բանաձեւը, որ յոյս կը յայտնէ թէ երկու կողմերը պիտի շարունակեն բանակցութիւնները, « որպէսզի Թունուզ ինքնավարութեան հասնի»: Այս առթիւ վստահութիւն կը յայտնէ Ֆրանսայի աջակցութեան համար:

Այժմ կը քննուի Մարոքի խնդիրը, որու մասին ալ միեւնոյն որոշումը կը սպասուի:

---

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

**ԱՐԵՒԵԼԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ** պետական դրամատան բարձր պաշտօնատարներէն մէկը, Շոնֆելտեր, արեւմտեան Պերլին ապաստանեցաւ:

**ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ** համագումարին բացման ճառին մէջ, Պ. Ժոլիօ Քիւրի ըսաւ թէ ժողովին գլխաւոր նպատակներէն մէկն է «ելք մը գտնել Քորէայի եւ միւս պատերազմները դադրեցնելու, պաղ պատերազմը վերջացնելու եւ միջազգային ապահովութիւն ստեղծելու համար»: Ժողովին նշանախօսքերն են.— «Դիւանագէտները ձախողեցան, թող ժողովուրդները վճռեն»: «Խաղաղութիւնը կրնայ փրկուիլ» եւն.:

**ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԻՆ** մէջ (Ծերակոյտ) բանաձեւ մը քուէարկուեցաւ որով կը պահանջեն խիստ միջոցներ ձեռք առնել, ջնջելու համար հիթլէրական արձագանգները եւ նացիական շարժումը արեւմտեան Գերմանիոյ մէջ, իբրեւ ծանր վտանգ մը Փրանքեւգերման յարաբերութեանց եւ ազատ աշխարհին համար: Բողոքին գլուխը անցած էին զօր. տը Կոլի կուսակիցները: Արտաքին Նախարարի օգնականը հաստատեց թէ միջոցներ ձեռք առնուած են, թէ Ֆրանսա բողոքած է Քրուփի հարստութեան վերահաստատման դէմ եւն.:

**ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ** ընկերվ. կուսակցութեան վարիչը յայտարարեց թէ պիտի չճանչնան եւրոպական բանակի եւ զինակցութեան դաշինքը, որուն համաձայն Գերմանիա 500.000 զինուոր պիտի տրամադրէ: Իրենք նոր ընտրութիւն կը պահանջեն:

**ԳՈՐԾԱԶՐԿՈՒԹԻՒՆԸ ՊԻՏԻ ԱՒԵԼՆԱՅ** Ֆրանսայի մէջ, կ՚ըսեն սենտիքաները, իսկ աշխատանքի Նախարարը կը հաւաստէ թէ տագնապը առաւելագոյն չափին հասած է արդէն:

**ՍՈՒՐԻՈՅ** սպարապետը, գնդ. Շիշաքլի, որ Գահիրէ կը գտնուի, կարեւոր տեսակցութիւններ ունեցաւ զօր. Նեկիպի հետ, Միջին Արեւելքի, Իսրայէլի, արաբ երկիրներու վերազինման եւն. խնդիրներու մասին:

---

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### ՀԱՄԱԶԳԱՅԻՆԻ 1953Ի ՏԱՐԵԳԻՐՔԸ

Տարեգիրքը կը պարունակէ 300է աւելի էջեր եւ 40է աւելի պատկերներ, ու տպագրուած է շատ խնամքով եւ ընտիր թուղթի վրայ:

Նշանակած ենք շատ մատչելի գին, որպէսզի ամէն ընտանիքի հնարաւորութիւն տուած ըլլանք իր սեղանին վրայ ունենալու օրինակ մը:

Տարեգիրքը ունի ճոխ եւ բազմակողմանի բովանդակութիւն նուիրուած հայկ. արուեստին, գրականութեան, քաղաք. պատմութեան, մշակոյթին, Համազգայինի գործունէութեան եւ այլ նիւթերու:

Գին թղթադրամ 3.50 լի,. ոսկի, լաթակազմ 4.50 լիր. ոսկի:

Կը ծախուի Համազգայինի գրախանութին մէջ Պէյրութ, եւ իր մասնաճիւղերուն մօտ այլ վայրերու մէջ:

---






---

ՆՈՒԷՐՆԵՐ.— Ողբացեալ Տիկին Ովսաննա Չէքմէեանի յիշատակին իր ամուսինը Պ. Շ. Չէքմէեան եւ զաւակը Գեղամ Չէքմէեան կը նուիրեն Ֆ.Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղին 3500 ֆր., Փարիզի Աղքատախնամին 3500, Հալէպի Քարէն Եփփէ Ճեմարանին 3000, Կիլիկիոյ հայր. միութեան 3000 ֆրանք:

Նոյն առթիւ իր զաւակները՝ Տէր եւ Տիկ. Սիմոն Զալեան 1000ական ֆր. Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղին, Աղքատախնամին, Քարէն Եփփէ Ճեմարանին եւ Փարիզի եկեղեցւոյ դպրոցներուն:

Այրի Տիկ. Արփինէ Տէմիրճեան նոյնպէս 1000ական ֆր. նոյն բարենպատակ հաստատութեանց:

X Պ. Խաչիկ Փելթէկեան 1000 ֆր. կը նուիրէ Հալէպի Քարէն Եփփէ Ճեմարանին ողբացեալ Տիկ. Ովսաննա Չէքմէեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի: Ստանալ «Յառաջ»էն:

---



---








---

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԻԹԱԼԻ.— Ֆ. Կ. Խաչի Իթալիի մասնաճիւղի ժողովը այս երկուշաբթի ժամը 3ին, սովորական հաւաքատեղին: Պարտաւորիչ ներկայութիւն:

ՏՐԱՊԻԶՈՆԻ նահանգի (Պոնտոս) Հայր. Միութեան տարեկան ընդհ. ժողովը, 14 Դեկտ. Կիրակի կէսօրէն վերջ, ժամը 3ին, Café Regent, métro Cadet: Օրակարգ.— 1) Զեկոյց, 2) Հաշուետուութիւն, 3) Ընտրութիւն նոր վարչութեան:

Կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները անխտիր:

---

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Լիոնէն Այրի Տիկ. Վերժին Գարանֆիլեան, Օր. Ալիս Գարանֆիլեան եւ պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն, բոլոր անոնց, որոնք անձամբ, կամ գրաւոր ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր եւ ազգականին՝ Միհրան Գարանֆիլեանի մահուան առթիւ:

---

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Ընկեր Պ. Զպուքճեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ այս կիրակի հոգեհանգիստ պիտի կատարուի ողբացեալ ՏԻԿԻՆ ԱՂԱՒՆԻ Պ. ԶՊՈՒՔՃԵԱՆԻ յիշատակին, իր մահուան քառասունքին առթիւ:

Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները:

---





---



---



---

Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

տրավհետեւ կրօնքի նման նուիրական գաղափար մը չի կրնար գործիք դառնալ «քաղաքական» պա-պիկեան»ներու եւ Թափթփուքներու ձեռքը: Վճ-ռաբար առաջքը պիտի առնենք այս խլրտումին, եւ չարաչար յուսախաբ պիտի ըլլան անոնք որ զանազան գրգռութիւններէ վերջ կը փորձեն «ռ-մխթէճի»ական շարժում ստեղծել:

---

համար: Միեւնոյն ատեն կ'ուզէ Փարիզ փոխադրել պէյին երկու որդիները եւ փեսան, իբրեւ Թունը-պզայնականներ որոնք ուղղակի կ'ազդեն վեհա-պետին վրայ:

Պէյը խնդրած է վերակազմել դահլիճը, պաշ-տօնի կոչելով իր անձնական խորհրդականները: Թերթերը կ'ըսեն թէ մարզպանը այլեւս անկարելի կը գտնէ որեւէ գործակցութիւն պէյին հետ, թէ պէյը քանի մը անգամ պատուոյ խօսք տուած, բայց դրժած էր, թէեւ շատ սիրալիր խօսակցու-թիւն մը ունեցան: Մարզպանը տեսակցեցաւ նաեւ Գ. Շումանի հետ:

✕ Իրաք ծանուցագիր մը ուղղեց Ֆրանսայի եւ Ազգաժողովին, կատարեալ անկախութիւն պա-հանջելով Թունուզի եւ Մարոքի համար: Ծանու-ցագիրը ուժգնօրէն կը բողոքէ Ֆրանս. իշխանու-թեանց ընթացքին դէմ:

✕ Մարոքի մէջ ալ անորոշ է կացութիւնը: Գչ. օր 400 ոստիկաններ եւ զինուորներ խուզար-կեցին Քազապլանքայի այն թաղը ուր խռովու-թիւններ ծագած էին: Բազմաթիւ զէնքեր եւ թռու-ցիկներ բռնուեցան, եւ 18 հոգի ձերբակալուեցան: Զին. ատեան մը քննութիւն բացած է, սարքուած դաւին առթիւ:

Քազապլանքայի մէջ ձերբակալուած 24 կար-միրներէն երեք Ռուսեր Պերլին ղրկուեցան, Խ. իշխանութեանց յանձնուելու համար, իրենց խնդ-րանքով:

✕ Եգիպտոսի իսլէմներու մեծ խորհուրդը, որ իսլամութեան գերագոյն իշխանութիւնն է, եր-կու ժամ նիստ գումարելով, որոշեց.—

1) Բողոքել Հիւս. Ափրիկէի հարստահարու-թեանց դէմ, Գահիրէի բոլոր դեսպաններուն ղըր-կելով բողոքագիրը.—2) Հրաւիրել ամբողջ աշ-խարհի Իսլամները եւ Արաբները որ օգնութեան համնին հալածանքի զոհերուն, շարունակել մի-ջազգային պայքարը՝ Հիւս. Ափրիկէի երկիրնե-րուն ազատագրութեան համար, առեւտուր չընել Ֆրանսայի հետ.— 3) Հրաւիրել Արա. Դաշնակցու-թիւնը եւ իսլամ երկիրները որ խզեն իրենց յարա-բերութիւնները Ֆրանսայի հետ:

ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՀՐԻՇԱՅԻՆ ոճիրներու դատը կը շարունակուի Մեցի մէջ: Մանրամասնութիւնները պիտի կար-դաք վաղը: Ամբաստանեալ գերման զինուորականնե-րէն Պիքէնպախ խոստովանեցաւ թէ «գիտական» փորձեր կատարած էին գերիներու եւ Գնչուներու վրայ: Այս փորձերուն հետեւանքով մեռած են 90 հոգի:

---

ՀՐԱՒԷՐ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

ՎԱԼԱՆՍ.— Սիրելի հայրենակիցներ, Ազգ. միութեան եւ հողաբարձութեան տարեշրջանը լը-րացած ըլլալով, կը հրաւիրենք Վալանսի Հայ հա-սարակութիւնը անխտիր ներկայ ըլլալ կարեւոր ժողովի մը որ տեղի պիտի ունենայ այս շաբաթ ի-րիկուն ժամը 8.30ին (20 Դեկտ.): Օրակարգ.— 1) Զեկուցում բարոյական եւ նիւթական գործու-նէութեան: 2) Նոր վարչութեան ընտրութիւն:

Ներկաներուն թիւը մեծամասնութիւն եւ տըր-ուած որոշումները օրինաւոր պիտի նկատուին:

Ի դիմաց վարչութեան նախագահ Գ. ՍԻՆԱՊ-ԵԱՆ, քարտուղար Յ. ԿԱՐԱՊԵՏԵԱՆ:

---

# ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ...
# ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ
# ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷՔ

Ֆրանսահայ Կապոյտ Խաչի Մարսէյլի տարե-կան պարահանդէսին:

Դեկտեմբեր 20 շաբաթ երեկոյեան ժամը 9էն մինչեւ լոյս, Օթէլ Սփլանտիտի շքեղ սրահներուն մէջ:

ՅԱՅՏԱԳԻՐ.— (Radio Փոռվանս Մակալին):

18 Դեկտ. Հինգշաբթի.— Պիտի նուագէ ջու-թակ՝ Պ. ԼԵՒՈՆ ՂԵՒՈՆԴԵԱՆ:

19 Դեկտ. Ուրբաթ.— Պիտի երգէ հայերէն՝ Տիկ. ՄՕՐԵՆՕ, (Մարսէյլի երգչախումբէն):

20 Դեկտ. Շաբաթ.— Պիտի խօսի՝ Կապ. Խա-չի կազմակերպութեան եւ գործունէութեան շուրջ՝ Տիկ. ՎԱՐԴԱՆՈՒՇ ՀԱՅԱՐԵԱՆ:

Վերոգրեալ երգերը եւ խօսակցութիւնները տե-ղի պիտի ունենան ճիշդ կէս օրին ժամը 12էն ըս-կսեալ:

Խճողումի տեղի չտալու համար կը խնդրուի տոմսերը եւ սեղանները կանխաւ ապահովել:

---

## Ողբացեալ ընկերներու յիշատակին

Յարգանքի ընկերական հաւաքոյթ Հ. Յ. Դ. Թանգարանին մէջ ողբ. ընկերներ ՌՈՒԲԷՆԻ, ԼԵ-ՒՈՆ ՇԱՆԹԻ եւ ԳԱՍՊԱՐ ԻՓԷԿԵԱՆԻ նկարներու զետեղման առթիւ, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի, այս կիրակի ժամը 15.30ին, 16 rue des Basserons, Montmorency.

Կը խօսի ընկեր ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ:

Հաղորդակց.— Gare du Nordէն ժամը 14 եւ 14.29ին:

---



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. կոմիտէի ընդհ. ժողովը այս շաբաթ ժամը 8.30ին, Օհանջանեան ակումբը: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. Զաւարեան կոմիտէին ընդհ. ժողովը այս շաբաթ իրիկուն ժամը 9ին, Խրիմեան դպրոցին մէջ: Ներկայ կ'ըլլան Շրջ. եւ Կեդր. կո-միտէներուն ներկայացուցիչները:

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անտոք» ենթա-կոմիտէի ընդհ. ժողովը՝ այս ուրբաթ ժամը 20.30-ին: Ընկ. Այտապիրեանի բնակարանը: Կարեւոր օ-րակարգ:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Փարիզի «Ահարոնեան» խումբի հաւաքոյթը այս հինգշաբ-թի ժամը 21.30ին Ազգ. տան մէջ, 32 rue de Tré-vise, métro Cadet: Կը խօսի ընկերուհի Եւա Օհան-նէսեան: Նիւթ՝ «Տպաւորութիւններ Անգլիայէն»: Հայերէնի դասերը ժամը 20.30ին:

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէին ընդհ. ժողովը այս ուրբաթ ժամը 20.30ին, 78 rue Rabelais, դպրոցին սրահը: Կարեւոր օրակարգ:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Հաճընի Հայր. Միու-թեան մեծ պարահանդէսը, 1953 Մարտ 29ին, Cercle Militaireի մէջ:

---

ՄԵԾ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Ալֆորվիլի մաս-նաճիւղին կողմէ, 28 Դեկտ. կէսօրէ վերջ, ժամը 3ին: Կը ներկայացուի Լեւոն Շանթի՝

ՃԱՄԲՈՒՆ ՎՐԱՅ թատերախաղը

Հաղորդակց.— Charenton Ecolesէն առնել 181 թիւ օթօպիւս եւ իջնել Mairie de Maison Alfort:

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:



ԿԱԼԱՆԻՐ, ՄՆԱՐՆԻՐ, ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ ԵՒ ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՆՋՈՅՔՆԵՐՈՒ ՀԱՅԿԱԿԱՆ ՍԵՂԱՆ-ՆԵՐՈՒՆ ԱՒԱՆԴԱԿԱՆ ԱՆՀՐԱԺԵՇՏ ԶԱՐԴԸ:

Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN. 17 rue Damesme, Paris (13)

րեսոր տեսակցութիւններ ունեցաւ Գ. Գ. Փինէի եւ Շումանի հետ, Հնդկաչինի եւ ուրիշ խնդիրներու մասին: Փարիզի մէջ կը սպասեն որ Լոնտոն ալ նիւթապէս օգնէ Հնդկաչինի պատերազմին եւ միացեալ Եւրոպական բանակի ծրագրին :

× Մ. Նահանգները հակաբոլշեւիկ պայքարին մաս նկատելով Հնդկաչինի պատերազմը, որոշեցին 30 միլիոն տոլար յատկացնել մինչեւ 1953 Յունիս 30: Փարիզի մէջ գոհ են այս որոշումէն :

× Գ. Թրումըն պարզելով իր եօթնամեայ գործունէութիւնը, իբրեւ Նախագահ, չեշտեց. — «Պէտք չէ խուճապի մատնուինք աշխարհի ներկայ վիճակէն: Կորմնցնողը մենք չենք: Համայնավարութիւնը ոչինչ կրնայ շահիլ պատերազմէն բացի աղէտէ»: Պաշտպանելով Եւրոպայի, Յունաստանի, Թուրքիոյ եւ Ճափոնի ընծայուած օգնութիւնը, յայտարարեց թէ Ատլանտեանի դաշինքը զինակցութենէ մը աւելի մեծ արժէք ունի:

ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՆԳԼԻԱ ԵՒ Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐԸ համաձայնեցան, լուծելու համար Իրանի քարիւղի վէճը: Նոր ծրագիրը Թէհրանի պիտի յանձնուի Մ. Նահանգներուն միջոցաւ :

ԱՐԱԲ ԵՒ ԱՍԻԱԿԱՆ պետութիւնները ժողով գումարելով, պիտի փորձեն չէզոք ազդախումբ մը կազմել արեւելքի եւ արեւմուտքի միջեւ: Այս գործին նախաձեռնութիւնը ստանձնած է Եգիպտոս: Ժողովը պիտի գումարուի Յունուարին, Գահիրէի մէջ :

ԱՌԵՒՏՐԱԿԱՆ վարձակալութեանց պայմանաժամը երկարաձգուեցաւ մինչեւ 1953 Յուլիս 15, Ազգ. Ժողովին որոշումով :

ԹՈՒՐՔ ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ մարմին մը Պելկրատ գնաց, առաջնորդութեամբ զօր. Տիւնեապոյլիի որ յոյս յայտնեց թէ օգտակար գործակցութիւն մը պիտի հաստատուի Թուրք, յոյն եւ եուկոսլաւ բանակներուն միջեւ: «Պէտք չէ հրաժարինք այս գործակցութենէն, եթէ նոյնիսկ Իտալացիները գոհ չմնան»:

ԱԶԳԱԺՈՂՈՎԻՆ Քաղաք. յանձնախումբը որոշեց ստիպողական կոչ մը ուղղել Զօրս Մեծերուն, որպէսզի անյապաղ հաշտութիւն կնքեն Աւստրիոյ հետ: Թեր քուէարկեցին 48 երկիրներ: Խորհրդային խմբակը չմասնակցեցաւ:

ԱԶԳ. ԺՈՂՈՎԻՆ առջի օրուան նիստին մէջ, քանի մը երեսփոխաններ թելադրեցին բանակցիլ, վերջացնելու համար Հնդկաչինի պատերազմը :

ԳԵՏԵՐՈՒ ՅՈՐԴՈՒՄԸ կը շարունակուի Կեդր. Ֆրանսայի մէջ: Կառոնի եւ Լուառի ջուրերը ահագին աւերներ գործած են: Պոստոյի կարգ մը արուարձանները ալ վտանգուած են: Սէնն ալ կը բարձրանայ :

ԽԻՍՏ ՄԻՋՈՑՆԵՐ ձեռք առնուած են Ռումանիոյ մէջ, գետնախնձորի եւ բանջարեղէնի տագնապը լուծելու համար: Պուքրէշի անթելը խստօրէն կը մեղադրէ հողագործական նախարարը :

ԻՐԱՔԻ երեսփ. ընտրութիւնները պիտի կատարուին Յունուար 14ին, ուղղակի քուէարկութեամբ :

ՄՈՍԿՈՒԱՅԻ մէջ մեռած է Պրոֆ. Ճիվէլեկով, մասնագէտ Իտալիոյ արուեստի պատմութեան :

ԿԵՂԾ ՀԱԶԱՐՆՈՑՆԵՐ բռնուեցան, մօտ 7000 հատ, Փարիզի եւ Լիոնի մէջ: — Ռոնի սաւ Գուայի մէջ ձերբակալուեցաւ կեղծարար մը որ 5000 ֆրանքնոցներ կը շինէր: Կեղծարարը խոստովանեցաւ թէ 500 եւ 300 ֆրանքնոցներ ալ կը կեղծէր տասը տարիէ ի վեր :





# ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութեան եւ Փարիզի շրջանի մասնաճիւղերու :

30 Դեկտ. Երեքշաբթի օրը ժամը 2ին, Sociétés Savantesի մեծ սրահին մէջ :

Գեղարուեստական ճոխ բաժին :

Բացման խօսք Շրջ. վարչութեան կողմէ :

ՇԱՐԺԱՊԱՏԿԵՐ ԺԱՄԸ ՃԻՇԴ 3ԻՆ:

«Կաղանդ Պապա», տօնածառ: Մանկական զաւեշտներ, նուագ, պար եւն.:

Կ'երգէ սիրուած երգչուհի Օր. Մ. ԿԱՌՎԱՐԵՆՑ:

Մուտքը ազատ է մանուկներու: Նախընթրիքի բաշխում :



## ՆԿԱՐԱՀԱՆԴԷՍ

ս ԺԱՆՍԷՄԻ (Ժ. Սէմէրճեան) Galerie J. Pascaud, 165 Bld. Haussmann, (métro: St. Philippe du Roule) : Կը տեւէ մինչեւ 11 Յունուար 1953

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Տէր եւ Տիկ. Աշոտ Նշանեան եւ զաւակները իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն ամէն անոնցորոնք անձամբ, ծաղկեպսակով, կամ գրաւոր իրենց ցաւակցութիւնները յայտնեցին իրենց մօր եւ մեծ մօր՝ ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՆՈՒՐԻՑԱ ՆՇԱՆԵԱՆի մահուան առթիւ :





# ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԼԻՈՆ.— Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս երկուշաբթի, ժամը 20.30ին, 78 rue Rabelais, դպրոցին սրահը: Կարեւոր օրակարգ :

## ՄԵԾ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Պօմոնի «Քրիստափոր» խումբի եւ հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Շրջ. վարչութեան :

Այս Զորեքշաբթի երեկոյ ժամը 21էն մինչեւ լոյս:

Գեղարուեստական խնամուած բաժին, երգ, արտասանութիւն, բանախօսութիւն եւ զանազան անակնկալներ :

«Քրիստափոր» խումբի կարող ուժերու կողմէ, պիտի ներկայացուի առաջին անգամ ըլլալով՝ ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ՓԵՍԱՑՈՒՆ կամ ՏԱՅԻ ԿԱՐԱՊԵՏ

Կէս գիշերէն մինչեւ լոյս եւրոպ. եւ հայկ. պարեր: Orchestre VALDO et son ensemble :

Ճոխ պիւֆէ դիւրամատչելի գիներով :









Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

**ԼԵՀԱՍՏԱՆ** ամբաստանեց Վարշաւայի Իսրայէլեան դեսպանատունը թէ լրտեսութիւն կը կատարէ: Իսրայէլ մերժեց ետ կանչել իր դեսպանը:

**ՖՐԱՆՍԱՅԷՆ** վտարուեցաւ յոյն գրող մը, Անտուէ Սոլոմոնիտէս, իբրեւ խռովարար: Կը գրէր Անտուէ Քեսրոս ծածկանունով :

**ԿԸ ՀԵՐՔՈՒԻ** այն լուրը թէ զօր. տը Կոլ պիտի հրաժարի իր կազմակերպութեան գործօն նախագահութենէն:

**ՔՈՐԷԱՅԻ** գերիներու կայանի մը մէջ կատարուած սպանութեանց առթիւ, Խ. Միութիւնը պահանջեց Ազգաժողովէն քննութիւն կատարել, «մարդասպան» նկատելով Մ. Նահանգները :

**ՍՊԱՆԻՈՅ** դիկտատորը Մ. Նահանգներուն պիտի տրամադրէ Քատիքս եւ Կարթագինէ նաւահանգիստները, իբրեւ օդանաւային խարիսխ, փոխարէն ստանալով 40 միլիոն սթերլին:

### ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ՓԱՐԻԶԻ Ս. Յ. Մ. ԵԿԵՂԵՑԻՈՅ

Այս Հինգշաբթի Ս. Ստեփաննոսի տօնին առթիւ պիտի մատուցուի մասնաւոր պատարագ եւ Հոգեհանգիստ պիտի կատարուի Նիկոմիտիոյ բազմավաստակ առաջնորդ Ստեփաննոս արք. Յովակիմեանի յիշատակին :

Կիրակի օր քառաձայն պատարագ «Կոմիտաս» երգչախումբին կողմէ ղեկավարութեամբ Պ. Արա Պարթեւեանի:

Ժամերգութենէն ետքը Հոգաբարձութիւնը կազմակերպած է ի պատիւ Դպրաց Դասու ընդունելութիւն մը խորհրդարանին մէջ :

×

### ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ՊՕՄՈՆԻ (ՄԱՐՍԷՅԼ) ԵԿԵՂԵՑԻՈՅ ԱՐԱՐՈՂՈՒԹԵԱՆՑ

25 Դեկտ. Եչ. Ս. Ստեփաննոսի, պատարագ ժամը 9.30 :

1 Յունուար 1953.— Նոր Տարուան առթիւ հանդիսաւոր արարողութիւն ժամը 9.30ին:

3 Յունուար Շբ. Ճրագալոյց, սկիզբ. արարողութեանց 4, պատարագ 5.30:

4 Յունուար Տօն Ծննդեան.— Սկիզբ ժամերգութեանց 7, պատարագ 9.30 :

5 Յունուար, Բչ. Յիշատակ Մեռելոց.— Սկզ. 8, պատարագ 9.30, հոգեհանգիստ 11:

Դպրաց Դասը կը վարէ Պ. Լ. Ճերահեան :

### ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿԻ ՏԱՐԵԴԱՐՁԸ

ՄԱՐՍԷՅԼ.— Վասպ. Հայր. Միութիւնը կը ծանուցանէ թէ Խրիմեան Հայրիկի կաթողիկոսական 60 եւ վախճանման 45ամեակներու տարեդարձները պիտի տօնուին 1953 Փետր. 15ին: Կը խնդրուի նկատի ունենալ :



### ՊԱՐԱՆՑԻԿ ՄԵԾ ՑԵՐԵԿՈՅԹ ՓԱՐԻԶԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ

25 Դեկտ. եւրոպ. Ծննդեան օրը ժամը 16—24 Salon des Prévoyantsի մէջ, 279 rue des Pyrenées métro Gambetta, օթօպիւս 26 :

Գեղարուեստական բաժին, պիւֆէ, վիճակախաղ ընտանեկան ջերմ մթնոլորտ:

Տախքերու մասնակցութեան համար մուտք 150ֆր.




Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)


## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս ուրբաթ ժամը 8.30ին, Regentի վերնայարկը, Cadet :

Դասախօս ընկեր ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼ :

Նիւթը՝ Քաղաք. կացութիւնը :

## Տարեկան մեծ պարահանդէս

Փարիզի Հ. Մ. Մ.ի (Հայ Մարզական Միութիւն) տարեկան պարահանդէսը 28 Դեկտեմբեր կիրակի ժամը 15—24, Cercle Militaireի մեծ սրահներուն մէջ (5 Place St. Augustin) :

Գեղարուեստական ճոխ բաժին :

Rico's Créol Band (Tropical) հռչակաւոր նուագախումբը :

Թառ ԳԱՐԵԳԻՆ եւ ԲԵՆՕ :

Զանազան անակնկալներ : Ճոխ պիւֆէ :

Տոմսերու գինը՝ 300 ֆրանք :



### ՄԻ ՄՏԱԾԷՔ



## ՑՈՒՑԱՏԵՏՐ

**ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻ** յառաջիկայ երկու հաւաքոյթները տեղի պիտի չունենան լատինական Ծննդեան եւ Կաղանդի տօներուն առթիւ: Յունուար 7ի Չորեքշաբթի երեկոյ ժամը 9ին, Քատէ սրճարանին վերնայարկը, կը խօսի Իտալիայէն նոր ժամանած յայտնի գիտնական ՓՐՕՖ. ՏՈՏՈՄԵԱՆՑ, նիւթ ունենալով «Հայերը պատմութեան առջեւ»: Մուտքը ազատ է:

Լսարանի վարչութիւնը ի պատիւ փրօֆ. Տոտոմեանցի սեղան մը կազմակերպած է, որու տեղըն ու օրը պիտի յայտարարուին առանձին :

**ՆԱՄԱԿԱՏՈՒՓ**,— ՇԹՈՒԹԿԱՐՏ, Մ. Յ.— Ստացանք բաժնեգինը, շուտով կը ղրկենք օրացոյցը :

ՄԱՐՍԷՅԼ, Յ. Մ.— Հասցէն չունինք: Հարցնել Մանչէսթըրի եկեղեցին :

**ՆՈՒԷՐՆԵՐ**.— Փարիզէն Պ. Յարութիւն Մինասեան «Յառաջ»ի միջոցաւ 1000 ֆր. կը նուիրէ Գերմանիոյ հայ տարագիրներու Կաղանդի տօնածառին, իսկ Օր. Շաքէ Մինասեան 500 ֆր. Փարիզի «Մանուկներու օրուան առթիւ»:

### ՄԵԾ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Պօմոնի «Քրիստափոր» խումբի եւ հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Շրջ. վարչութեան :

Այս Չորեքշաբթի երեկոյ ժամը 21էն մինչեւ լոյս:

Գեղարուեստական խնամուած բաժին, երգ, արտասանութիւն, բանախօսութիւն եւ զանազան անակնկալներ :

«Քրիստափոր» խումբի կարող ուժերու կողմէ, պիտի ներկայացուի առաջին անգամ ըլլալով՝ ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ՓԵՍԱՑՈՒՆ կամ ՏԱՅԻ ԿԱՐԱՊԵՏ

Կէս գիշերէն մինչեւ լոյս եւրոպ. եւ հայկ. պարեր: Orchestre VALDO et son ensemble :

Ճոխ պիւֆէ դիւրամատչելի գիներով :



ԿԱՂԱՆԴԻ, ԾՆՈՒՆԴԻ, ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ ԵՒ ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՆՋՈՅՔՆԵՐՈՒ ՀԱՅԿԱԿԱՆ ՍԵՂԱՆՆԵՐՈՒՆ ԱՒԱՆԴԱԿԱՆ ԱՆՀՐԱԺԵՇՏ ԶԱՐԴԸ:

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութեան եւ Փարիզի շրջանի մասնաճիւղերու :

30 Դեկտ. Երեքշաբթի օրը ժամը 2ին, Sociétés Savantesի մեծ սրահին մէջ :

Գեղարուեստական ճոխ բաժին :

Բացման խօսք Շրջ. վարչութեան կողմէ :

ՇԱՐԺԱՊԱՏԿԵՐ ԺԱՄԸ ՃԻՇԴ 3ԻՆ :

«Կաղանդ Պապա», տօնածառ : Մանկական զաւեշտներ, նուագ, պար եւն. :

Կ'երգէ սիրուած երգչուհի Օր. Մ. ԿԱՌՎԱՐԵՆՑ :

Մուտքը ազատ է մանուկներու : Նախընթրիք բաշխում :

## Լիոնի մէջ

Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղը «Մանուկներու Օր»ը կը տօնէ այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Cours Lafayette, 8 Passage Coste, երիտասարդ քրիստոնէական միութեան սրահը : Կաղանդ պապան երախաներուն պիտի բաժնէ նուէրներ, Նոր տարւոյ ծառի շուրջ :

× ԼԻԼԱՅԻ դպրոցին տօնածառը այս կիրակի, կէսօրէ վերջ ժամը 3ին, դպրոցին սրահը 32 — 34 Ave. de la Porte des Lilas, որուն կը յաջորդէ ճաշկերոյթը ժամը 7ին :

### ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ՓԱՐԻԶԻ Ս. Յ. Մ. ԵԿԵՂԵՑԻՈՅ

Այս Հինգշաբթի Ս. Ստեփաննոսի տօնին առթիւ պիտի մատուցուի մասնաւոր պատարագ եւ Հոգեհանգիստ պիտի կատարուի Նիկոմիտիոյ բազմավաստակ առաջնորդ Ստեփաննոս արք. Յովակիմեանի յիշատակին :

Կիրակի օր քառաձայն պատարագ «Կոմիտաս» երգչախումբին կողմէ ղեկավարութեամբ Պ. Արա Պարթեւեանի :

Ժամերգութենէն ետքը Հոգաբարձութիւնը կազմակերպած է ի պատիւ Դպրաց Դասու ընդունելութիւն մը խորհրդարանին մէջ :

×

### ՑՈՒՑԱԿ ԱՐԱՐՈՂՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻՈՅ

24 Դեկտ. — Ճրագալոյց Ծննդեան, Հանդիսաւոր պատարագ ժամը 17ին :

25 Դեկտ. — Ծնունդ. — Պատարագ եւ քարոզ վրդ. Ամատունիի կողմէ ժամը 10.30ին :

4 Յունուար, կիրակի. — Հոգեհանգստեան պատարագ, ի յիշատակ Գրիգոր եպս. Պահապանեանի, ժամը 10.30ին :

11 Կիր. — Յայտնութեան եւ Մկրտութեան արարողութիւն, ժամը 10.30ին :

Հայ կաթողիկէ առաջնորդարան
10bis rue Thouin

### ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ՊՕՄՈՆԻ (ՄԱՐՍԷՅԼ) ԵԿԵՂԵՑԻՈՅ ԱՐԱՐՈՂՈՒԹԵԱՆՑ

25 Դեկտ. Եչ. Ս. Ստեփաննոսի, պատարագ ժամը 9.30 :

## ՄԻ ՄՈՌՆԱՔ

ԴԵԿՏԵՄԲԵՐ 10ԻՆ ԲԱՑՈՒԵՑԱՒ



### ՀԱՄԱԽԱՐՀ. ՄԻՈՒԹԵԱՆ ԼԻՈՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Ի նպաստ՝ Հայրենակից գիմնազներու, հիւանդներու եւ ծերերու :

Այս Շաբաթ ժամը 21էն մինչեւ լոյս, Նախկին Ռազմիկներու սրահին մէջ, 4 rue Basse Combalot, Լիոն : Գեղարուեստական բաժին : Ընտիր նուագախումբ տ'Ակուստօ եղբայրներու : Երգապնակի վրայ հայկ. խրախճանքի երգեր : Մատչելի գիներ : Ընտանեկան եւ ընկերային ջերմ մթնոլորտ :

Տոմսերու մասնակցութիւն 99 ֆր., դիմել վարչութեան անդամներուն :

## Կաղանդի գիշեր

Դեկտ. 31ին, ժամը 22էն մինչեւ լոյս :

Պարահանդէս կազմակերպուած Ս. Խաչ Ընկերակցութեան կողմէ, ի նպաստ բարեսիրական ձեռնարկներու : Hôtel des Ingénieurs des Arts et Métiersի շքեղ սրահներուն մէջ, 9bis, Ave. d'Iéna. Métro: Iéna: Նուագ, ճոխ պիւֆէ, անակնկալներ :

Կը խնդրուի նախապէս ապահովել տոմսակները եւ սեղանները դիմելով, տուեալ ժամերուն Տիկին Պչաքճեանի Wag. 99-65 եւ WIMAX հաստատութեան 25, rue Trévise, Pro. 44-39:

## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Փարիզի Հ. Մ. Մ.ի (Հայ Մարզական Միութիւն) տարեկան պարահանդէսը 28 Դեկտեմբեր կիրակի ժամը 15—24, Cercle Militaireի մեծ սրահներուն մէջ (5 Place St. Augustin) :

Գեղարուեստական ճոխ բաժին :

Rico's Créol Band (Tropical) հռչակաւոր նուագախումբը :

Թաւ ԳԱՐԵԳԻՆ եւ ԲԵՆՕ :

Զանազան անակնկալներ : Ճոխ պիւֆէ : Տոմսերու գինը՝ 300 ֆրանք :

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս ուրբաթ ժամը 8.30ին, Regentի վերնայարկը, Cadet :

Դասախօս ընկեր ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼ :

Նիւթը՝ Հայկ. Դատը երէկ եւ այսօր :

### Հ. Յ. Դ. Տան համար

Տէր եւ Տիկին Հայկակ Ծատուրեան իրենց զարմիկին՝ Տիկին ԶԱՐՈՒՀԻ ԲԻՒՓՃԵԱՆի դառնաղէտ մահուան առթիւ 3000 ֆր. կը նուիրեն Դաշնակցութեան Փարիզի տան հիմնադրամին : (Ուղղակի վճ.) :



ԴԵՐՁԱԿ

## ԲԻՒԶԱՆԴ ՀԱՆՁԵՐԵԱՆ

Կը շնորհաւորէ Նոր Տարին եւ յաջողութիւն կը մաղթէ բոլորին եւ այս առթիւ կը ծանուցանէ թէ փոխադրուած է 40 Ave. Niel, Paris (17): Բոլորովին նոր կարգուսարքով :

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ՏԱՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ նիստը այս շաբաթ 27 Դեկտ. ժամը 20.30ին, Café de la Mairieի մէջ, Place St. Sulpice (métro St. Sulpice): Կը հրաւիրուին բոլոր անդամները :

ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻ յառաջիկայ երկու հաւաքոյթները տեղի պիտի չունենան լատինական Ծնունդի եւ Կաղանդի տօներուն առթիւ : Յունուար 7ի Չորեքշաբթի երեկոյ ժամը 9ին, Քառէ սրճարանին վերնայարկը, կը խօսի Իտալիայէն Նոր ժամանած յայտնի գիտնական ՓՐՕՖ. ՏՈՏՈՄԵԱՆՑ, նիւթ ունենալով «Հայերը պատմութեան առջեւ» : Մուտքը ազատ է :

Լսարանի վարչութիւնը ի պատիւ փրօֆ. Տոտոմեանցի սեղան մը կազմակերպած է, որուն տեղըն ու օրը պիտի յայտարարուին առանձին :

Ծանօթ երգիչ ԺԻՐԱՅՐ ՍԵՐԳՈՅԵԱՆ կը խաղայ այս չորեքշաբթի գիշեր Քարմէնի ներկայացման մէջ (Օփերա Քոմիք) Zunigaի դերը, որ միեւնոյն ատեն անթելով պիտի տրուի Chaine Nationaleի վրայ ժամը 20.15էն սկսեալ :

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ. — Կապ. Խաչի Պանեօ Բաշանի մասնաճիւղի Դեկտ. 7ի ցերեկոյթ պարահանդէսի առթիւ իր խորին շնորհակալութիւնը կը յայտնէ բոլոր այն հայրենակիցներուն եւ ընկերուհիներուն, որոնք գեղեցիկ նուէրներով սիրայօժար սատարեցին վիճակախաղի յաջողութեան :

### ՄԵԾ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Պօմոնի «Քրիստափոր» խումբի եւ հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Շրջ. վարչութեան :

Այս Չորեքշաբթի երեկոյ ժամը 21էն մինչեւ լոյս :

Գեղարուեստական խնամուած բաժին, երգ, արտասանութիւն, բանախօսութիւն եւ զանազան անակնկալներ :

« Քրիստափոր» խումբի կարող ուժերու կողմէ, պիտի ներկայացուի առաջին անգամ ըլլալով՝ ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ՓԵՍԱՑՈՒՆ կամ ՏԱՑԻ ԿԱՐԱՊԵՏ

Կէս գիշերէն մինչեւ լոյս եւրոպ. եւ հայկ. պարեր : Orchestre VALDO et son ensemble :

Ճոխ պիւֆէ դիւրամատչելի գիներով :



Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

**ԹՈՒՐՔԻՈՅ** արտաքին նախարարը, Ֆուատ Քէօփրիւլիւ, Հռոմ այցելեց: Իտալական մամուլը այս առթիւ կը պանծացնէ երկու երկիրներուն բարեկամութիւնը, վերապահ դիրք մը բռնելով Նուկոսլաւիոյ հանդէպ:

**ԱՐԱԲԱԿԱՆ** 12 երկիրներու ներկայացուցիչները ժողով գումարեցին Գահիրէի մէջ, քննելու համար Մարոքի, Թունուզի եւն. խնդիրները: Արաբ. Դաշնակցութիւնը կը պահանջէ որ Անգլիա եւ Մ. Նահանգները միջամտեն:

---

Տէր եւ Տիկին Եդուարդ Փանոսեան եւ զաւակը, Տէր եւ Տիկ. Տիգրանեան եւ զաւակները Արշակ, Թագուհի եւ Սրբուհի (Լոս Անճըլըս), Տէր եւ Տիկին Դաւիթեան եւ զաւակներ (Դամասկոս), Այրի Տիկին Քիրէճեան եւ զաւակը Հայկ, Այրի Տիկին Դերենկուհի Փանոսեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Նալպանտեան եւ զաւակները (Պուքրէշ), ինչպէս նաեւ Տէմիրճիպաշեան, Քլթիկեան, Շաքարեան, Գասպարեան, Խաչատուրեան Մինասեան ընտանիքները, ազգականները եւ բարեկամները սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց մօր, քրոջ, քրոջ աղջկան, կեսրոջ, մեծ մօր եւ ազգականին՝

**ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՏԻՐՈՒՀԻ ՓԱՆՈՍԵԱՆԻ**
(Ծնեալ Ղազարոսեան)

մահը որ տեղի ունեցաւ Դեկտ. 23ին, իր բնակարանին մէջ, 3 Rue Bourdaloue, Paris (9):

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի վաղը, ուրբաթ, ժամը 2ին, Փարիզի Հայոց եկեղեցին (15 Rue Jean Goujon):

Ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Թիէի գերեզմանատունը:

Մասնաւոր մահազդ ղրկուած չըլլալով կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

Ոչ ծաղիկ, ոչ ծաղկեպսակ:

---

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութեան եւ Փարիզի շրջանի մասնաճիւղերու:

30 Դեկտ. Երեքշաբթի օրը ժամը 2ին, Sociétés Savantesի մեծ սրահին մէջ:

Գեղարուեստական ճոխ բաժին:

Բացման խօսք Շրջ. վարչութեան կողմէ:

ՇԱՐԺԱՊԱՏԿԵՐ ԺԱՄԸ ՃԻՇԴ 3ԻՆ:

«Կաղանդ Պապա», տօնածառ: Մանկական զաւեշտներ, նուագ, պար եւն.:

Կ'երգէ սիրուած երգչուհի Օր. Մ. ԿԱՌՎԱՐԵՆՑ:

Մուտքը ազատ է մանուկներու: Նախընթրիքի բաշխում:

## Լիոնի մէջ

Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղը «Մանուկներու Օր»ը կը տօնէ այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Cours Lafayette, 8 Passage Coste, երիտասարդ քրիստոնէական միութեան սրահը: Կաղանդ պապան երախաներուն պիտի բաժնէ նուէրներ, Նոր տարւոյ ծառի շուրջ:

× ԼԻԼԱՅԻ դպրոցին տօնածառը այս կիրակի, կէսօրէ վերջ ժամը 3ին, դպրոցին սրահը 32 — 34 Ave. de la Porte des Lilas, որուն կը յաջորդէ ճաշկերոյթը ժամը 7ին:

---

**ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.**— Այրի Տիկ. Գոհարիկ Յովհաննէսեան եւ զաւակները խորին շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, նամակով կամ ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն եւ հօր՝ տղբացեալ ՀՐԱՆԴ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆԻ մահուան առթիւ:

---

## Կաղանդի գիշեր

Դեկտ. 31ին, ժամը 22էն մինչեւ լոյս:

Պարահանդէս կազմակերպուած Ս. Խաչ Ընկերակցութեան կողմէ, ի նպաստ բարեսիրական ձեռնարկներու: Hôtel des Ingénieurs des Arts et Métiersի շքեղ սրահներուն մէջ, 9bis, Ave. d'Iéna. Métro: Iéna: Նուագ, ճոխ պիւֆէ, անակնկալներ:

Կը խնդրուի նախապէս ապահովել տոմսակները եւ սեղանները դիմելով, աւաւօտեան ժամերուն Տիկին Պչաքճեանի Wag. 99-65 եւ WIMAX Հաստատութեան 25, rue Trévise, Pro. 44-39:

---

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻ՛ՒՆ
## ՈՒՇԱԴՐՈՒԹԻ՛ՒՆ

Մօտ օրէն հրապարակ կ'ելլէ ՍԵՒԱՆ օղին, նրբաճաշակ խմողներուն ըմպելին:

Պատրաստուած նշանաւոր PERNOD EXPORTի կողմէ:

Ֆրանսայի ընդհ. ներկայացուցիչն է Mr. JEAN MARCEL, 27 rue Victor Fougier, Vienne, (Isère):

Ապսպրանքներուն համար տեղական նոյն հասցէին:

---

## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Փարիզի Հ. Մ. Մ.ի (Հայ Մարզական Միութիւն) տարեկան պարահանդէսը 28 Դեկտեմբեր կիրակի ժամը 15—24, Cercle Militaireի մեծ սրահներուն մէջ (5 Place St. Augustin):

Գեղարուեստական ճոխ բաժին:

Rico's Créol Band (Tropical) հռչակաւոր նուագախումբը:

Թառ ԳԱՐԵԳԻՆ եւ ԲԵՆՕ:

Զանազան անակնկալներ: Ճոխ պիւֆէ: Տոմսերու գինը՝ 300 ֆրանք:

---

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս ուրբաթ ժամը 8.30ին, Regentի վերնայարկը, Cadet:

Դասախօս ընկեր ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼ:

Նիւթը՝ Հայկ. Դատը. երէկ եւ այսօր:

---




ՄԱՆԿԱԿԱՆ

ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ՊԱՐԲԵՐԱԹԵՐԹ

Կը հրատարակուի ամիսը 3 անգամ

Բաժանորդագրութեան պայմաններ.— Տարեկան Ֆրանսա 1000 ֆր., Արտասահման 1400 ֆր.:

Հասցէ.— N. HOVHANESSIAN
14 Rue du Soleil, Paris (20)

Tél. Tru. 47-48 C .C. P. Paris 7065-15

Ծանօթ.— Հայերէն թերթ ծախողներու քով՝ 30 ֆրանք թիւը:

Լոյս տեսաւ Բ. թիւը:

---

Շաբաթ 27 Դեկտ. ժամը 17.30ին
**Salle Gaveau, 45 rue la Boëtie**

## Օհան Դուրեան

Վերջին նուագահանդէսը:

Յայտագրին մաս կը կազմէ ԿՈՄԻՏԱՍ վրդ.ի քառաձայն պատարագը դաշնաւորուած ՏՈՒՐԵԱՆի կողմէ J .S. Bachի Magnificatն:

Տոմսերը ճարել ծանօթ վայրերէ:

---

ՁԵՐ ԲՈԼՈՐ ԳՆՈՒՄՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ, ԴԻՄԵՑԷՔ

## Ա. ՀԱՄԱԼԵԱՆ
## ՎԱՃԱՌԱՏՈՒՆԸ

68, Rue Nationale, Marseille Հեռ. Colbert 33-22

Ուր պիտի գտնէք ամէն եղանակի յարմար
ԼԱԽԱԳՈՅՆ ԿԵՐՊԱՍՆԵՐ
ճոխ մթերք մը նոյնպէս աստառի, թելայի, կարի դերձանի եւ կոճակի
ԴԵՐՁԱԿՆԵՐՈՒ ԵՒ ԴԵՐՁԱԿՈՒՀԻՆԵՐՈՒ
վերաբերեալ ամէն տեսակ գործիքներ
ԱՌԱՋՆԱԿԱՐԳ ԱՊՐԱՆՔ, ԱՆՄՐՑԵԼԻ ԳԻՆ

---

## Ծախու է Մարսէյլի մէջ

Վիլլա մը (արուարձանի մէջ) որ կրնայ բաժնուիլ երկուքի վեց եւ չորս սենեակներով, խըրաքանչիւր մասը 700 մեթր պարտէզով, պտղատու ծառերով եւ պաղ ջուրի ակով:

Ի հարկին կը փոխանակուի Փարիզի մէջ (քաղաք կամ արուարձան) յարկաբաժինի կամ փոքր վիլլայի մը հետ:

Մանրամասնութեանց համար, դիմել՝ ՅԱԿՈԲ ՉՈՐՊԱՃԵԱՆԻ, 136 Ave. des Olives, Marseille.

---




COUTURE

ՑԱՏԿԱՊԷՍ ԿԸ ՅԱՆՁՆԱՐԱՐՈՒԻ:
ՓԱՐԻԶ ԱՊՐՈՂ ԿԱՄ ԱՐՏԱՍԱՀՄԱՆԷՆ ԵԿՈՂ ՀԱՅԵՐՈՒՆ ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

## Կ. ԳԱԶԱԶԵԱՆ

Փարիզեան նորաձեւութեանց մեծ վաճառատունը, 17 Bld. des Capucines, Paris: Café de la Paixին ճիշդ դիմացը: Հեռ. OPE. 80-34

---

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ՏԱՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ նիստը այս շաբաթ 27 Դեկտ. ժամը 20.30ին, Café de la Mairieի մէջ, Place St. Sulpice (métro St. Sulpice): Կը հրաւիրուին բոլոր անդամները:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Րաֆֆի խումբի ժողովը այս ուրբաթ ժամը 20.45ին, Nord Express, 27 rue de Dunkerque:

---

ՅՈՒՑԱԿ ԱՐԱՐՈՂՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ
Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑՒՈՅ

24 Դեկտ.— Ճրագալոյց Ծննդեան, հանդիսաւոր պատարագ ժամը 17ին:

25 Դեկտ.— Ծնունդ.— Պատարագ եւ քարոզ վրդ. Ամատունիի կողմէ ժամը 10.30ին:

Հայ կաթողիկէ առաջնորդարան
10bis rue Thouin

---

ՄԵԾ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղին կողմէ, 28 Դեկտ. կէսօրէ վերջ, ժամը 3ին: Կը ներկայացուի Լեւոն Շանթի՝

ՃԱՄԲՈՒՆ ՎՐԱՅ թատերախաղը

Հաղորդակց.— Charenton Ecolesէն առնել 181 թիւ օթօպիւս եւ իջնել Mairie de Maison Alfort:

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

---





---

Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

ԻՍՐԱՅԷԼԻ տրուելիք հատուցումներու խնդիրը միշտ կը զբաղեցնէ արաբ. երկիրները : Արեւմտեան Գերմանիա ծանուցագիր մը ուղղելով Եգիպտոսի, կ'ըսէ թէ Իսրայէլի հետ պայմանագիրը կնքուեցաւ այնպիսի պարագաներու մէջ որոնք կախում չունին Գերմանիայէն եւ թէ իրենք պատրաստ են Ազգաժողովին յանձնելու պայմանագիրը եւ թէ ՄԱԿը կրնայ բաժին մը հանել Պաղեստինի տարագիրներուն : Եթէ Ազգաժողովը որոշէ որ հատուցումը Իսրայէլի վճարուի, այն ատեն Գերմանիա պատրաստ է պայմանագիր մը կնքել արաբ. երկիրներուն հետ, մեծ գործարաններ հիմնելու համար գերման դրամագլուխով : Այս գումարները պիտի վերադարձուին շնորհիւ արտադրութեան յաւելման : Գերմանիա կ'ուզէ ամրապնդել իր յարաբերութիւնները արաբ. երկիրներու հետ :

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ ներգաղթի նոր օրէնքին գործադրութեան առթիւ, Դեկտ. 24ին Ֆրանս. «Լիպէռթէ» նաւուն 974 նաւաստիներէն 272ին արգիլուեցաւ ցամաք ելլել Նիւ Եորքի մէջ, որովհետեւ մերժած էին պատասխանել հարցումներուն : Օրէնքը մեծ դժգոհութիւն կը պատճառէ բոլոր երկիրներուն մէջ եւ շատեր կ'ուզեն փոխադարձ միջոցներ ձեռք առնել, մանաւանդ որ շատ կը դժուարանայ ներգաղթը : Ամերիկացիները իրենք ալ գոհ չեն եւ կը կարծուի թէ օրէնքը պիտի վերաքննուի, երբ Արգլնհաուըր գործի ձեռնարկէ յունուարին :

ԱՐԱԲ - ԱՍԻԱԿԱՆ 12 երկիրներու ժողովը վերջացաւ Գահիրէի մէջ : Կը մասնակցէին Լիբանանի, Արաբիոյ, Սուրիոյ, Իրաքի, Եմէնի, Յորդանանի, Հնդկաստանի, Փաքիստանի, Ինդոնեզիոյ, Աֆղանիստանի, Եթովպիոյ դեսպանները եւ Եգիպտոսի արտ. նախարարը որ «պատմական» կոչեց ժողովը : Օրակարգի գլխաւոր խնդիրներն էին Ֆրանսայի դիրքը Հիւս. Ափրիկէի մէջ, Պաղեստինի խնդիրը եւ Գերմանիոյ հատուցումը Իսրայէլի : Որոշուեցաւ խնդրել կառավարութիւններէն որ բողոքեն Ֆրանսայի եւ պահանջեն անմիջապէս միջոցներ ձեռք առնել Մարոքի եւ Թունուզի խնդիրները կարգադրելու համար համաձայն Ազգաժողովի դաշինքին : Եթէ գոհացում չստանան, ձեռնարկներ պիտի կատարեն Ֆրանսայի դէմ :

«ՇԱՄՓՈԼԻՈՆ» ՇՈԳԵՆԱՒԻՆ զոհերուն պաշտօնական թիւն է չորս ճամբորդ, 12 նաւաստի, ուրեմն 16 հոգի : — Երեք Ֆրանսացիներ կը մնան նաւուն մէջ, որպէսզի աւարի չտրուի :

# ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութեան եւ Փարիզի շրջանի մասնաճիւղերու :

30 Դեկտ. Երեքշաբթի օրը ժամը 2ին, Sociétés Savantesի մեծ սրահին մէջ :

Գեղարուեստական ճոխ բաժին :

Բացման խօսք Շրջ. վարչութեան կողմէ :

ՇԱՐԺԱՊԱՏԿԵՐ ԺԱՄԸ ՃԻՇԴ 3ԻՆ :

«Կաղանդ Պապա», տօնածառ : Մանկական զաւեշտներ, նուագ, պար եւն. :

Կ'երգէ սիրուած երգչուհի Օր. Մ. ԿԱՌՎԱՐԵՆՑ :

Մուտքը ազատ է մանուկներու : Նախընթրիքի բաշխում :

## Լիոնի մէջ

Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղը «Մանուկներու Օր»ը կը տօնէ այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Cours Lafayette, 8 Passage Coste, երիտասարդ քրիստոնէական միութեան սրահը : Կաղանդ պապան երախաներուն պիտի բաժնէ նուէրներ, Նոր տարւոյ ծառի շուրջ :

ՆՈՒԷՐՆԵՐ .— Աղեքսանդրիոյ մէջ հանգուցեալ Պ. Յովսէփ Գրասէրեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի Անգլիայէն Տէր եւ Տիկ. Ժիրայր Ժամկոչեան 3000 Ֆր. կը նուիրեն որուն 2 հազար Ֆր.ը Հայ Կարմիր Խաչին եւ 1000 Ֆր.ը եկեղեցւոյ Կրթ. Մարմնին :

Նոյն առթիւ Տէր եւ Տիկ. Բարսեղ Տամլամաեան կը նուիրեն հազար Ֆր. Հայ Կարմիր Խաչին եւ 500 Ֆր. եկեղեցւոյ Կրթ. Մարմնին :

Այս գումարները ստանալու համար դիմել Փարիզի եկեղեցւոյ դիւանատունը :

× Տէր եւ Տիկին Յակոբ Խաչատուրեան 1500 Ֆր. կը նուիրեն փոխան ծաղկեպսակի Անտիլիի ծերանոցին, Պ. Կարապետ Փաթթուկեանի մահուան առթիւ : Ստանալ «Յառաջ»էն :



# ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Փարիզի Հ. Մ. Մ.ի (Հայ Մարզական Միութեան) տարեկան պարահանդէսը 28 Դեկտեմբեր կիրակի ժամը 15—24, Cercle Militaireի մեծ սրահներուն մէջ (5 Place St. Augustin) :

Գեղարուեստական ճոխ բաժին :

Rico's Créol Band (Tropical) հռչակաւոր նուագախումբը :

Թառ ԳԱՐԵԳԻՆ եւ ԲԵՆՕ :

Զանազան անակնկալներ : Ճոխ պիւֆէ : Տոմսերու գինը՝ 300 ֆրանք :



Շաբաթ 27 Դեկտ. ժամը 17.30ին
Salle Gaveau, 45 rue la Boëtie

## Օհան Դուրեան

Վերջին նուագահանդէսը :

Յայտագրին մաս կը կազմեն ԿՈՄԻՏԱՍ վրդ.ի քառաձայն պատարագը դաշնաւորուած ՏՈՒՐԵԱՆի կողմէ J .S. Bachի Magnificatն :

Տոմսերը ճարել ծանօթ վայրերէ :

ՀԱՄԱԽԱՐԲ. ՄԻՈՒԹԵԱՆ ԼԻՈՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Ի նպաստ՝ Հայրենակից գիմնազներու, հիւանդներու եւ ծերերու :

Այս Շաբաթ ժամը 21էն մինչեւ լոյս, Նախկին Ռազմիկներու սրահին մէջ, 4 rue Basse Combalot, Լիոն : Գեղարուեստական բաժին : Ընտիր նուագախումբ տ'Ակուստօ եղբայրներու : Երգացանկի վրայ հայկ. խրախճանքի երգեր : Մատչելի գիներ : Ընտանեկան եւ ընկերային ջերմ մթնոլորտ :

Տախքերու մասնակցութիւն 99 Ֆր., դիմել վարչութեան անդամներուն :

ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պ. Սիմոն Օհանեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ այս կիրակի հոգեհանգիստ պիտի կատարուի Փարիզի Հայոց եկեղեցին, 15 Rue Jean Goujon, յետ պատարագի, իրենց կնոջ եւ մօր ողբացեալ ՏԻԿԻՆ ԱՂԱՒՆԻ Ս. ՕՀԱՆԵԱՆԻ մահուան տարելիցին առթիւ :



# ՅՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ՏԱՆ ՑԱՆՑՆԱԺՈՂՈՎԻ նիստը այս շաբաթ 27 Դեկտ. ժամը 20.30ին, Café de la Mairieի մէջ, Place St. Sulpice (métro St. Sulpice) : Կը հրաւիրուին բոլոր անդամները :

ՓԱՐԻԶ .— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ահարոնեան խումբի ընդհ. ժողովը՝ այսօր, շաբաթ, Ազգ. Տան մէջ, ժամը 20.30ին : Օրակարգ.— 1) Պատգամ. ժողով եւ ընտրութիւն պատգամաւորի : Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է :

## ՅԱՌԱՋի ցառաձմեան համար

Լիոնէն Պ. Զաքարեան մէկ տարեկան ՅԱՌԱՋ կը նուիրէ Տէր եւ Տիկին Գալուստեանի, Քանատա :

ՄԵԾ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղին կողմէ, 28 Դեկտ. կէսօրէ վերջ, ժամը 3ին : Կը ներկայացուի Լեւոն Շանթի՝

ՃԱՄԲՈՒՆ ՎՐԱՅ թատերախաղը

Հաղորդակց.— Charenton Ecolesէն առնել 181 թիւ օթօպիւս եւ իջնել Mairie de Maison Alfort :

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :







Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

